Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի Արդյունաբերական արտադրության և շինարարության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

ՀԿԿ Կենտկոմի Գյուղատնտեսական արտադրության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՄԱՐՏ 5 1963




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն. Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, II հարկ. սեն. 71, հեռախոս՝ 2—52—78։

## СОДЕРЖАНИЕ

стр.











**Адрес редакции:** здания ЦК КП Армении, II этаж, ком. 71, тел. 2-52-78.




# ՁԱՅՆ ՏԱՆՔ ԴԵՊՈՒՏԱՏՈՒԹՅԱՆ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԻ ՕԳՏԻՆ

Մեր ռեսպուբլիկան նախընտրական կամպանիայի եռուն օրեր է ապրում։ Ընտրողները բուռն խանդավառությամբ նախընտրական ժողովներ են գումարում և միահամուռ կերպով պաշտպանում Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական սովետների դեպուտատության իրենց թեկնածուներին, ժողովրդի արժանավոր զավակներին։ Դեպուտատության թեկնածուները համատեղ աշխատանքում ու պայքարում վաղուց նվաճել են իրենց ընտրողների սերն ու համակրանքը։ Նրանք իրենց ամբողջ գիտելիքները, ուժն ու եռանդը ի սպաս են դրել Հարազատ կոմունիստական պարտիայի XXII համագումարի որոշումների կենսագործմանը, մեր սիրասուն Հայրենիքի բարգավաճման, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման մեծ գործին։ Կա՞ մեր երկրում ավելի պատվավոր գործ, քան ժողովրդի

բարօրության ու երջանկության համար ծառայելը։ Եվ մեր երկրի ամեն մի ընտրյալ պատիվ է համարում ծառայել ժողովրդին, աշխատել ու պայքարել նրա երջանկության համար։ Ահա, օրինակ, առողջապահության անխոնջ մարտիկ, պրոֆեսոր Սեդրակ Սիմոնի Շարիմանյանը, որն իր ամբողջ կյանքը նվիրել է ժողովրդի առողջությունը պահպանելու գործին։ Սկսած 1926 թվականից մինչև այժմ ընկ. Շարիմանյանը վիրաբուժական աշխատանք է կատարում մեր ռեսպուբլիկայում։ Նա, Հայրենական մեծ պատերազմի տարիներին աշխատելով Երևանի էվակոհոսպիտալում որպես գլխավոր բժիշկ, հազարավոր մարտիկների կյանք է փրկել։ Ունենալով վիրաբուժական խոր գիտելիքներ, պրոֆեսոր Շարիմանյանը պատրաստել և պատրաստում է բժշկական նոր կադրեր, որոնք աշխատում են իրենց սիրելի ուսուցչի օրինակով ինչպես էլ լինի փրկել մարդու կյանքը։

Իր լավ աշխատանքի համար պրոֆեսոր Շարիմանյանը արժանացել է կառավարական մի շարք պարգևների։

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատության թեկնածու է առաջադրված Երևանի էլեկտրալամպերի գործարանի ա-



ռաջավոր բանվորուհի Կլարա Օհանի Օհանյանը։ «Ես,— ասում է ընկ. Օհանյանը,— սիրեցի աշխատանքային կյանքը, գործարանային կյանքը և շատ թանկ եմ գնահատում բանվորի կոչումը»։

Թանկ գնահատել բանվորի կոչումը, ահա այն ազնիվ նշանաբանը, որով կյանքում առաջ է գնում ընկ. Օհանյանը։

Դեպի աշխատանքը ունեցած սիրո շնորհիվ նա, ավարտելով միջնակարգ դպրոցի 8-րդ դասարանը, 1951 թվականին աշխատանքի է անցնում գործարանում և մինչև այժմ աշխատում է նույն տեղում։ Նա անձնվիրաբար պայքարում է գործարանի կոլեկտիվի առջև դրված խնդիրները պատվով կատարելու համար։ Ետ մնացողներին ընկերական օգնություն ցույց տալու, սկսնակ բանվորներին աշխատանքային հմտություն սովորեցնելու շնորհիվ ընկ. Օհանյանը գործարանում վաստակել է հմուտ դաստիարակի անուն։

Առաջին հայացքից սովորական, բայց իրականում ստեղծագործական այն աշխատանքը, որ այժմ գործարանում կատարում է ընկ. Օհանյանը, կոփում է տասնյակ երիտասարդների, նրանց դարձնում իրենց գործի վարպետը։

Շնորհալի ուսուցչուհի է Նազիկ Ստեփանի Ստեփանյանը, որը Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատության թեկնածու է գրանցված Երևանի Կոտովսկու № 8 ընտրական օկրուգում։ Լավ աշխատանքի համար նրան սիրում ու հարգում են թե՛ դպրոցականները և թե՛ նրանց ծնողները։ Լինելով ուսուցչուհի Արտաշատի շրջանի և Երևանի մի շարք դպրոցներում, ընկ. Ստեփանյանը ոչ միայն կրթել ու դաստիարակել է հարյուրավոր երեխաների, այլև եղել է աշխատավորների սիրելի ագիտատորը և վայելել նրանց համակրանքը։

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատության թեկնածու է առաջադրված բազմափորձ ու բազմավաստակ գիտնական ընկ. Մանվել Գարեգինի Մանվելյանը։ Ընկ. Մանվելյանը շուրջ 100 գիտական աշխատությունների հեղինակ է։ Նա Հայաստանում առաջինն է եղել, որ էլեկտրահալման միջոցով ստացել է ապակի, իսկ այնուհետև ապակյա թելեր։ Նա Երևանի ալյումինի գործարանի համար հայտնագործել է շատ արժեքավոր ու էժանագին հումք։ Նրան հաջողվել է քարերից ստանալ ավելի քան 10 տեսակի թանկարժեք քիմիական նյութեր, որոնց թվում՝ երևանիտ։ Հիանալի գիտնա-



կանը այժմ հայկական տուֆ և բազալտ քարերից ստանում է մետաքսյա թելեր։

Այս բոլոր փաստերը վկայում են այն մասին, որ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի և տեղական սովետների դեպուտատության թեկնածուներ են առաջադրված լավագույններից լավագույնները, որոնք անսահմանորեն նվիրված են ժողովրդին և գործնական աշխատանքում դրսևորել են իրենց նվիրվածությունը կոմունիզմի կառուցման մեծ գործին։

Սակայն դեպուտատության թեկնածուների զգալի մասը սովետների կառավարման գործում, պետության կառավարման գործում առաջին անգամ է ներգրավվում։ Ուստի մեր ագիտատորների պարտքն է՝ նախընտրական կամպանիայի ընթացքում լայն ճանաչման ներկայացնել դեպուտատության թեկնածուներին, ծավալուն ագիտացիա մղել նրանց թեկնածության օգտին։ Թող բոլորը ճանաչեն և հանգամանորեն իմանան իրենց դեպուտատության թեկնածուի կենսագրությունը, նրա աշխատանքային հիանալի գործունեությունը։

Ագիտատորը միշտ, ներկա ընտրությունների նախօրյակին առավել ևս, մտածված ու խելացիորեն պետք է օգտվի ագիտացիոն

աշխատանքի բոլոր ձևերից ու մեթոդներից։

Այժմ մեր ընտրողները մեծ ցանկություն ունեն և սիրով լսում են հետաքրքիր զրույցներ ու զեկուցումներ, ինչպես յոթնամյակի տարիներին ձեռք բերված հաջողությունների, այնպես էլ առաջիկայում կատարվող վիթխարի աշխատանքների մասին։ Ո՞ւմ հայտնի չէ, որ ժամանակն աշխատում է սովետների երկրի, կոմունիզմի օգտին։ Ամբողջ աշխարհը ականատես եղավ այն բանին, որ անցյալ ընտրություններից մինչև ներկա ընտրությունները, ընդամենը 4 տարվա ընթացքում, մեր երկիրը հասավ չտեսնված հաջողությունների։ Այն, ինչ նշել էր պարտիան, այն է, կյանքում կիրառվեց։ Այդ նշանավոր տարիների մասին ագիտատորները պետք է հաճախակի զրույցներ ունենան ընտրողների հետ և պատմեն նրանց, թե ինչպես մեր ժողովուրդը սրբությամբ կենսագործում է պարտիայի XXII համագումարի որոշումները և ձեռք է բերել ժողովրդական տնտեսության ծաղկման ու բարգավաճման գործում նշանակալից հաջողություններ։

Յոթնամյակի տարիներին վիթխարի հաջողությունների հասավ նաև հայ ժողովուրդը։ Այդ հաջողությունների մասին համառոտակի տեղեկություններ, թվեր ու փաստեր են



տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի այս համարում, որոնք ագիտատորը կարող է օգտագործել իր զրույցների ընթացքում։

Ընտրությունները աշխատանքային նոր հաջողություններով դիմավորելը մեր երկրում լավագույն տրադիցիա է դարձել։ Հենց մեր ռեսպուբլիկայում նախընտրական կամպանիայի այս օրերին արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, ամենուրեք ծավալվում է սոցիալիստական մրցություն յոթնամյակի հինգերորդ տարվա պլանները բարձր ցուցանիշներով ու ժամկետից շուտ կատարելու համար։ Երևանի Լենինյան շրջանի աշխատավորությունը պարտավորություն է ստանձնել 1963 թվականի համախառն արտադրանքի տարեկան պլանը կատարել 103 տոկոսով, լրացուցիչ կերպով թողարկել 13 միլիոն ռուբլու արտադրանք, այդ թվում՝ 12 հազար կոմպլեկտ ավտոդող, 150 գեներատոր, 10 հազար կիլովատ կարողությամբ տրանսֆորմատոր, 100 հիդրոպոմպ, 15 հազար զույգ կոշիկ, 30 հազար մետր բրդյա գործվածքեղեն, 1,5 միլիոն պայմանական տուփ պահածո և այլն։ Նույն շրջանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի աշխատողները, ի

պատիվ Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական սովետների ընտրությունների, պարտավորվել են մինչև մարտի 17-ը յուրացնել և թողարկել «ԴԱԶՕ» տիպի էլեկտրաշարժիչների առաջին պարտիան։

Լենինյան շրջանի աշխատավորները բարձր պարտավորություններ են ընդունել նաև շինարարության, կոմունալ տնտեսության և շրջանի բարեկարգման գծով։ Նրանք խոստացել են բնակելի շենքերի, արդյունաբերական ու կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարական-մոնտաժային աշխատանքների 1963 թվականի պլանը կատարել ժամկետից 6 օր շուտ՝ դեկտեմբերի 25-ին, պլանից դուրս շահագործման հանձնել 1.000 քառակուսի մետր բնակելի տարածություն, դպրոցական շենքերի կառուցումը ավարտել մինչև օգոստոսի 25-ը՝ լավ և գերազանց գնահատականով։ Տարվա ընթացքում գազիֆիկացնել ևս 1.200 բնակարան, սալահատակել 30 և ասֆալտապատել 35 հազար քառակուսի մետր փողոցներ ու հրապարակներ, 2.300 գծամետրով ընդարձակել ջրմուղի և 5.350 գծամետրով՝ կոյուղու ցանցը։ Տնկել 18 հազար ծառ ու թուփ և այլն։

Ընտրություններն աշխատանքային նոր հաջողություններով են նշանավորում նաև



ռեսպուբլիկայի մյուս քաղաքների ու գյուղերի աշխատավորները։ Հետևաբար ագիտատորը պետք է իր ունկնդիրների հետ առանձին զրույցներ ունենա ընտրությունների պատվին ստանձնած պարտավորությունների և այդ պարտավորությունները կատարելու մասին։

Նախընտրական կամպանիայի ընթացքում ագիտատորներն իրենց զրույցները պետք է հարստացնեն նաև այն փաստերով, թե ինչպես ՍՄԿՊ XX և XXII համագումարներից հետո սովետների դերը մեր երկրում բարձրացել է։ Այժմ սովետների աշխատանքներին մասնակցում են ավելի շատ աշխատավորներ, լայնորեն տարածված է հասարակական հիմունքներով սովետներում աշխատելը։

Որպեսզի նախընտրական կամպանիայի ընթացքում ագիտացիոն զրույցները լինեն ավելի նպատակասլաց, ագիտատորները պետք է ունկնդիրներին, հատկապես երիտասարդ ընտրողներին, պարզաբանեն սովետական ընտրական սիստեմի և բուրժուական ընտրական սիստեմի արմատական տարբերությունը, բացահայտեն բուրժուական կեղծ դեմոկրատիան։ Նշված թեմայով զրույց անցկացնելիս հիմնական գրականու-

թյունը կլինեն ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ կոնստիտուցիաները, Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի և տեղական սովետների ընտրությունների կանոնադրությունները, ընկ. Ն. Ս. Խրուշչովի ճառը Մոսկվայի Կալինինյան ընտրական օկրուգի նախընտրական ժողովում, ինչպես նաև «Ագիտատորի բլոկնոտ»-ի 4-րդ համարում տպագրված «Կեղծ դեմոկրատիա» խորագրով հոդվածը։

Սկսվել է ընտրությունների նախապատրաստման ամենաեռուն շրջանը։ Արդեն դեպուտատության թեկնածուները հանդիպումներ են ունենում իրենց ընտրողների հետ։ Ագիտատորները պետք է օգնեն պարտիական կազմակերպություններին, որպեսզի դեպուտատության թեկնածուների հանդիպումներն իրենց ընտրողների հետ անցկացվեն բարձր կազմակերպվածությամբ։

Մոտենում է ընտրությունների օրը՝ մարտի 17-ը, բոլորս մեկ մարդու պես ձայն տանք արժանավորներից արժանավորներին, Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական սովետների դեպուտատության թեկնածուների օգտին։

Բոլորս դեպի ընտրությունները։



## ՁԵՅԹՈՒՆԻ ԱԳԻՏԿԵՏՈՒՄ

Մարդաշատ է Երևանի 26 կոմիսարների շրջանի Նոր Զեյթուն թաղամասը, որի նորակառույց, ասֆալտապատ, ընդարձակ փողոցներով սլանում են տրամվայները, տրոլեյբուսները, ավտոբուսները և այլ մեքենաներ։ Եվ ահա տրամվայի № 2 երթուղին մեզ տանում է դե՛պի Նոր Զեյթուն։

Ամենայն իրավամբ Նոր Զեյթունը մայրաքաղաքի խոշորագույն շինարարական հրապարակներից մեկն է համարվում։ Ձեր աչքի առջև հսկա վերամբարձների անտառն է։ Կառուցվել ու կառուցվում են բազմահարկ բնակելի շենքեր, նոր գործարաններ ու դպրոցներ։ Ահա ուսանողական նոր թաղամասը. այնտեղ կառուցվում են մի քանի բազմահարկ, հարմարավետ հանրակացարանի շենքեր, ուր մոտ ապագայում կապրեն երեք հազարից ավելի ուսանողներ։ Կառուցման ընթացքի մեջ են նուրբ օրգանական քի-

միայի ինստիտուտի կորպուսները, շինանյութերի և կառուցվածքների գիտահետազոտական ինստիտուտի շենքերն ու փորձարարական բազան: Արդեն օգտագործման է հանձնվել կենդանաբանական ինստիտուտի բազմահարկ շենքը: Կառուցվել են նաև դպրոցական և մանկապարտեզի նոր շենքեր, ստեղծվել կուլտուրայի նոր օջախներ:

Այո՛, շատ բան է փոխվել այս թաղամասում Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի նախորդ ընտրություններից հետո անցած չորս տարում:

Իջնում ենք տրամվայի № 2 երթուղու նախավերջին կանգառում: Մեր առջև բացվում է ընդարձակ մի նոր փողոց, որի երկու կողմի՝ վրա բարձրանում են բազմահարկ շենքեր. այդ փողոցը կոչվում է Փարիզի կոմունայի անվամբ:

Նոր Զեյթունի Կամարակ թաղամասում ապրում են հայրենադարձ ֆրանսահայերի բազմաթիվ ընտանիքներ: Ահա թե ինչո՞ւ «Փարիզի կոմունա» փողոցի վրա գտնվող նորակառույց № 48 հայկական դպրոցը թաղամասի բնակիչների խնդրանքով, Երևանի քաղսովետի գործկոմի որոշմամբ կոչվեց հայ ժողովրդի լավագույն զավակ, ֆրան-



սիական պարտիզանական շարժման ղեկավարներից մեկի՝ մարտիկ-գրող Միսակ Մանուշյանի անվամբ:

Հենց այս դպրոցում էլ տեղավորված են Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի և տեղական սովետների ընտրությունների 1/38 ընտրական տեղամասը և ագիտկետը:

Գեղեցիկ զարդարված շքամուտքից մտնելով մենք հանդիպում ենք տեղամասի ընտրական հանձնաժողովի նախագահ, դպրոցի դիրեկտոր և բազմավաստակ մանկավարժ ընկ. Ա. Բաբասյանին:

Շրջում ենք լուսավոր դպրոցի ընդարձակ միջանցքներով, լինում դասասենյակներում, ամենուրեք մաքրություն, ծաղիկներ ու կանաչ, պատերին բազմապիսի լոզունգներ և ցուցափեղկեր: Հաճելի է տպավորությունը:

— Այս դպրոցը, ինչպես նաև մեր ընտրական տեղամասը, անցյալ ընտրությունների ժամանակ գոյություն չուներ— ասում է ընկ. Բաբասյանը,— ինչպես մեր դպրոցը, այնպես էլ մեր թաղամասը ծնունդ են առել նախորդ ընտրություններից հետո:

Նա հանգամանորեն ծանոթացնում է ընտրական հանձնաժողովի աշխատանքի և նրա հետագա անելիքների հետ:

Ուղեցույց սլաքները մեզ տանում են դեպի ագիտկետը։ Գեղեցիկ է զարդարված այն, ստեղծվել են ստենդներ՝ նվիրված մեծ Լենինի կյանքին ու ռևոլյուցիոն գործունեությանը, պարտիայի XXII համագումարին։

Ագիտկետն ստանում է միութենական և ռեսպուբլիկական 35 թերթեր և ամսագրեր։ Ագիտկետին կից սենյակը հարուստ գրադարանն է, որն ունի շուրջ 5 հազար կտոր քաղաքական և գեղարվեստական գրականություն։ Այդ գրադարանից սիստեմատիկաբար օգտվում են ընտրողներ Լ. Ասատըրյանը, Ն. Կյուրինյանը, Շ. Երիցյանը, Մ. Հանեյանը և շատ ուրիշներ։

Ագիտկետի վարիչն է կաթի կոմբինատի պարտկազմակերպության անդամ Արուսյակ Հայրապետյանը, իսկ ագիտկոլեկտիվի ղեկավարը՝ դպրոցի պարտկազմակերպության քարտուղար Սեդա Գաբրիելյանը։ Եվ այս ժրաջան կանայք զգալի աշխատանք են տանում, որպեսզի ընտրողների շրջանում հաջողությամբ կազմակերպվեն ագիտացիոն-մասսայական աշխատանքները։

Ագիտկոլեկտիվում ընդգրկված են դպրոցի և կաթի կոմբինատի 23 ագիտատորներ, որոնք շաբաթը մեկ անգամ լինում են թաղամասի ընտրողների մոտ ու նրանց հա-





մար կազմակերպում հետաքրքիր զրույցներ ընտրությունների կանոնադրության, մեր երկրի ու ռեսպուբլիկայի էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի նվաճումների ու միջազգային դրության մասին։

Ընտրողների ցանկալի հյուրն են ագիտատորներ Հռիփսիկ Ավագյանը, Ջեմմա Հովհաննիսյանը, Օֆիկ Աթոյանը, Աղվան Մկրտչյանը, Զինա Քառյանը և շատ ուրիշներ։

Սկսվում է աշխույժ զրույցը։ Ագիտկետի վարիչ ընկ. Ա. Հայրապետյանը մեզ ծանոթացնում է իրենց աշխատանքի պլանի հետ։ Ըստ այդ պլանի, թաղամասի բնակիչների մեջ սիստեմատիկաբար ագիտացիոն-մասսայական աշխատանքները կատարելուց հետո, ագիտկետում և դպրոցի դահլիճում կկազմակերպվեն դասախոսություններ, գեղարվեստական կինոնկարների ցուցադրումներ, ինքնագործունեության և հանգստի երեկոներ, հանդիպումներ դեպուտատության թեկնածուների հետ և այլն։

— Դպրոցի դիրեկցիայի հետ մոտ օրերս կազմակերպելու ենք հանդիսավոր երեկո դպրոցը Միսակ Մանուշյանի անվամբ կոչվելու կապակցությամբ,— ասում է դպրոցի պարտկազմակերպության քարտուղար և ա-

գիտկոլեկտիվի ղեկավար ընկեր Սեդա Գաբրիելյանը։ Այդ երեկոյին մենք հրավիրելու ենք Միսակ Մանուշյանի կնոջը, շատ գրողների և մեր թաղամասի ընտրողներին։

Ագիտկետն է մտնում թուխ դեմքով, սևաչյա մի աղջիկ։

— Խնդրեմ, ծանոթացեք Շաքե Երիցյանի հետ,— ասում է ագիտկոլեկտիվի ղեկավարը,— նա մեր դպրոցի նախկին սանն է, նրանց ընտանիքը եկել է Իրաքից։ Ավարտելով մեր դպրոցը, նա այժմ սովորում է պետական համալսարանի արևելյան լեզուների ֆակուլտետի առաջին կուրսում։ Նա արդեն 18 տարեկան է և առաջին անգամ պետք է մասնակցի ընտրություններին։

— Մարտի 17-ի ընտրությունների օրը,— ուրախ ասում է երիտասարդ աղջիկը,— ես առաջինր պետք է ստանամ ընտրական բյուլետենը և կատարեմ իմ քաղաքացիական պարտքը։ Այդ օրը անմոռաց կլինի իմ կյանքում։

— Այս օրերին ագիտկետում լինում են շատ երիտասարդներ, որոնք ավարտելով նույն դպրոցը՝ այժմ աշխատում են գործարաններում, հիմնարկներում կամ սովորում են բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Դպրոցի այդ սաները սերտ



կապ են պահպանում դպրոցի հետ և այժմ ակտիվորեն մասնակցում ընտրությունների նախապատրաստմանը։

Վերջերս տեղի ունեցավ ագիտկոլեկտիվի հերթական նիստը, որտեղ հավաքված ագիտատորներին տրվեց ագիտացիոն զրույցների թեմա։ Ագիտկոլեկտիվի ղեկավար ընկեր Սեդա Գաբրիելյանը ուսուցիչ-ագիտատորների առջև խնդիր դրեց թաղամասի ընտրողների համար կազմակերպել զրույց ժողովրդական կրթության նվաճումների մասին։

Անհրաժեշտ կոնսուլտացիայից հետո ագիտատորները դիմեցին դեպի իրենց ամրացված թաղը՝ ագիտացիոն պարապմունքն անցկացնելու համար։

Մենք ծանոթանում ենք ուսուցչուհի, ագիտատոր ընկեր Հռիփսիկ Ավագյանի հետ։ Նրան լավ են ճանաչում և սիրալիր ընդունում Կամարակ թաղամասի 16-րդ փողոցի 60—74 տների ընտրողները։

Ընկեր Հռիփսիկը դպրոցի հնագույն ուսուցչուհիներից է, հայոց լեզվի դասատու, համակրելի մի կին։ Նրա հետ միասին մտնում ենք տներից մեկը՝ ընտրող Սուրեն Սարգսյանի բնակարանը։ Ջերմ բարևներից հետո ագիտատորի շուրջը հավաքվում են

տասնյակ տնային տնտեսուհիներ։ Նրանցից շատերը նույն դպրոցի երեխաների ծնողներն են։

Սկսվում է զրույցը։

— Հարգելի ընկերներ,— ասում է ագիտատորը,— ընտրությունների նախապատրաստության այս օրերին, ընտրողներից յուրաքանչյուրը հետաքրքրվում է, թե նախորդ ընտրություններից հետո ընկած ժամանակամիջոցում ինչպիսի փոփոխություններ են տեղի ունեցել մեր երկրի և ժողովրդի կյանքում։ Անցած զրույցի ընթացքում դուք ծանոթացաք այն խոշոր նվաճումների հետ, որ մենք ձեռք ենք բերել մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի բնագավառներում։ Այդ ժամանակամիջոցում աննախընթաց հաջողություններ ունենք նաև մեր ժողովրդական կրթության զարգացման գործում։

Մամուլից դուք արդեն գիտեք, որ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, այսպես կոչված «ազատ» աշխարհում, միլիոնավոր պատանիների և աղջիկների հեռանկարները անուրախ և անխոստումնալից են։ Անցած տարի 16—21 տարեկան հասակի ամերիկյան մոտավորապես 700 հազար պատանիներ և աղջիկներ դպրոցներում չէին սովո-



րում և աշխատանք չունեին։ Ամերիկյան երիտասարդության ներկա սերնդի կենսապայմանները խիստ ծանր են։

Կրթության գործը խիստ անմխիթար վիճակում է գտնվում նաև մեր հարևան Թուրքիայում։ 1961—1962 ուսումնական տարում Թուրքիայում դպրոցից դուրս են մնացել մեկ միլիոնից ավելի երեխաներ, որոնք չեն կարող դպրոց հաճախել միջոցներ չունենալու պատճառով։

Թուրքիայի 12.588 բնակավայրում առհասարակ չկան դպրոցներ և ուսուցիչներ, Թուրքիայի բնակչության 70 տոկոսը առայժմ մնում է անգրագետ։

Երեխաների կրթության նման տխուր պատկեր գոյություն ունի նաև կապիտալիստական մյուս երկրներում։

Սակայն այլ է պատկերը մեր երկրում. տարեցտարի ընդարձակվում է դպրոցական ցանցը և բարելավվում երեխաների ուսման ու դաստիարակության գործը։

— Դրա փայլուն օրինակը կարող է ծառայել Սովետական Հայաստանը,— շարունակում է ուսուցչուհի ագիտատորը։ Մեր ռեսպուբլիկան վեր է ածվել համատարած գրագիտության երկրի, ծածկվել բարձրագույն ուսումնական, միջնակարգ-մասնա-

գիտական հաստատությունների տեխնիկումների ու դպրոցների լայն ցանցով։ Այժմ Հայաստանի բուհերում սովորում են 25.935 ուսանողներ, 6.832-ով ավելի, քան 1959—1960 թվականներին։ Ունենք 42 տեխնիկում և միջնակարգ-մասնագիտական այլ հաստատություններ, որտեղ սովորողների թիվը հասնում է 20 հազարի, իսկ 1.247 դպրոցներում այժմ սովորում են 386 հազար 600 աշակերտներ, 90 հազարով ավելի, քան նախորդ ընտրությունների ժամանակ։ Այսպիսով, ռեսպուբլիկայի բոլոր ուսումնական հաստատություններում, միասին վերցրած, սովորում են ավելի քան 460 հազար մարդ, այսինքն Հայաստանի բնակչության մոտ մեկ քառորդը։ Ավելի վառ պատկերացում ունենալու համար հիշատակենք, որ 1914 թվականին Հայաստանում սովորողների թիվը հազիվ հասնում էր 18 հազարի, այսինքն՝ նույնիսկ շատ ավելի պակաս, քան այժմ մեր ուսուցիչների թիվն է։

Ագիտատորը, բազմաթիվ փաստերով հանգամանորեն խոսելով Հայաստանի ժողովրդական կրթության բնագավառում ձեռք բերած նվաճումների մասին, վկայաբերում է նաև Հայաստան այցելած արտասահմանյան շատ հյուրերի տպավորությունները։



«Մեզ ամենից շատ ուրախացրեց այն մեծ տպավորությունը,— գրում է ֆրանսիացի ուսուցիչ Ժան Լանդիևը,— որ ձեր երկրում մեծ ուշադրություն է դարձվում ժողովրդական կրթության վրա։ Հայաստանում բոլոր հնարավորությունները տրված են սովորելու համար»։

Ուրուգվայհայ տուրիստ Նուբար Մարգարյանը հայտարարել է.

«Լուսավորության բնագավառի վերաբերյալ ես ուրախությամբ ու գոհունակությամբ պետք է նշեմ, որ դժվար թե արտասահմանում գտնվի մի մարդ, որն ի վիճակի լինի պատկերացնելու այն ամենը, ինչ անում է սովետական պետությունը լուսավորության գործի կազմակերպման բնագավառում»։

— Իրավացի են արտասահմանյան մեր բարեկամները,— եզրափակում է իր համառոտ զրույցը ագիտատոր ուսուցչուհին։ Պարտիան և կառավարությունը բոլոր պայմաններն ստեղծել են մեր մատաղ սերնդի ուսման և դաստիարակության համար։

Հետաքրքիր զրույցն ավարտված է. տրվում են բազմաթիվ հարցեր, ապա խոսում են ունկնդիրները, որոնցից շատերը հայրենադարձ են։ Նրանք պատմում են, թե ինչպես

օտար երկրներում ապրելով, իրենց երեխաները զրկված էին կրթություն ստանալու իրավունքից։

Վերջում ագիտատորը հայտարարում է, որ հաջորդ զրույցի ժամանակ ընտրողներին կծանոթացնի ռեսպուբլիկայի Գերագույն սովետի և տեղական սովետների դեպուտատության թեկնածուների կյանքին և աշխատանքային գործունեությանը։

Ունկնդիրները գոհունակությամբ հրաժեշտ են տալիս ագիտատորին։

Գոհ և ժպիտը դեմքին ագիտկետն է վերադառնում ագիտատոր Հոփսիկը, իսկ այնտեղ, պայծառ լուսավորված ագիտկետում, հերթապահ ագիտատոր, ուսուցչուհի Գոհար Սարիբեկյանը զրույցի է բռնվել ընտրողների հետ ու նրանց պատմում է Իրաքում տիրող դրության մասին։

Արդեն երեկո է, ագիտկետն ավելի մարդաշատ է դառնում։

ՖՐ. ՄԱՐՈՒԹՅԱՆ

## ԽՆԿՈՅԱՆԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ

Անցած տնտեսական տարին հաջողությամբ ավարտեց Սպիտակի շրջանի Խնկոյան գյուղի կոլտնտեսությունը։ Այստեղ ժամկետից շուտ կատարվեց պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու տարեկան պլանը։

Ձեռք բերված հաջողությունների մեջ իրենց բաժինն ունեն նաև ագիտատորները, որոնք օգնել են կոլտնտեսականներին բարձր ցուցանիշներով կատարելու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Գյուղի ագիտկետում ունկնդիրները հաճախակի դեկուցումներ, զրույցներ և դասախոսություններ են լսում նվիրված մեր փառապանծ պարտիայի XXII համագումարին ու պարտիայի ծրագրին, ՍՍՌՄ արտաքին քաղաքականության լուսաբանման և շատ ուրիշ հարցերին։ Բազմաթիվ դասախոսություններ են կարդացվել նաև գյուղատնտեսության առաջավորների փորձի վերաբերյալ։ Բացի դրանից, ագիտկետում հաճախ

հանդես են գալիս հենց իրենք, առաջավորները։ Օրինակ, կթվորուհի Արաքսյա Սարգըսյանը, որ մոտ 15 տարի է, ինչ աշխատում է ֆերմայում և միշտ իր խնամած կովերից ստացել է նախատեսված պլանից ավելի կաթ, երիտասարդ կթվորուհիներին պատմեց իր փորձի մասին։ Մինչև առաջավոր կթվորուհու զեկուցման օրը կազմվեց վերջին հինգ տարիների վերաբերյալ անասնապահական ֆերմայի ցուցանիշների տախտակ, որտեղ ցույց էր տրված Արաքսյա Սարգըսյանի և մյուս կթվորուհիների ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը։ Առաջավոր կթվորուհու զեկուցումը կոլտնտեսականների կողմից ընդունվեց հետաքրքրությամբ, շատ կոլտնտեսականներ ելույթներ ունեցան ու պատմեցին անասունները խնամելու իրենց փորձի մասին և խոստացան ընդօրինակել Սարգսյանին։ Իրենց առաջավոր փորձի մասին զեկուցումներով և դասախոսություններով հանդես են եկել շաքարի ճակնդեղի բարձր բերքի վարպետներ՝ օղակավարուհիներ Հեղուշ Խաչատրյանը, Բուրաստան Սերոբյանը, դաշտավարական բրիգադի բրիգադիր Մովսես Խաչատրյանը և ուրիշներ։

Մասսայականացնելով մեր կոլտնտեսու-



թյան առաջավորների փորձը, մենք մեծ ուշադրություն ենք դարձնում նաև մեր երկրի գյուղատնտեսության նշանավոր փարոսների փորձի ուսումնասիրմանը։

Առաջավոր փորձի մասսայականացման գործին մեծ չափով նպաստում է նաև «Ո՞վ է այսօրվա առաջավորը» թերթիկը, որտեղ ամեն օր նշվում է այն կոլտնտեսականի անունը, որը գերակատարել է օրվա առաջադրանքը։

Ագիտկետի «Նոր կյանք» պատի թերթը, որն իր շուրջն է համախմբել 30 թղթակիցներ, մեծ աշխատանք է կատարում։ Թերթը լուսաբանում է կոլտնտեսականների աշխատանքային առօրյան, նշում թերությունները և օգնում վերացնելու դրանք։

Բացի «Նոր կյանք» պատի թերթից, ագիտկետում լույս է տեսնում նաև երգիծական «Մոծակ» թերթը, որը իր էջերում խարազանում է պորտաբույծներին, անբաններին և հասարակական կարգ ու կանոն խախտողներին։

Մի ժամանակ Ռազմիկ Սերոբյանը, Սուրիկ Սարգսյանը իրենց լավ չէին պահում հասարակական վայրերում, աննպատակ թափառում էին ու չէին աշխատում։

«Մոծակը» նրանց գցեց իր «հարվածների» տակ։ Թերթը լույս տեսնելուց հետո նրանք եկան ագիտկետ և խոստացան, որ կուղղվեն։ Եվ իսկապես ուղղվեցին։ Այժմ Ռազմիկը աշխատում է մեխանիզատոր, իսկ Սուրիկը շարքային կոլտնտեսական է։ Նրանք դարձել են հիանալի աշխատողներ։ Մի ժամանակ իրեն լավ չէր պահում նաև Ասլան Ղուկասյանը։ Մենք նրա հետ երկար զբաղվեցինք։ Ասլանը գնաց մեխանիզատորների մոտ։ Այժմ նա հմուտ մեխանիզատոր է, իսկ ընկերները վստահեցին և նրան ընտրեցին ԼԿԵՄ կոմիտեի անդամ։ Այժմ գյուղում գովեստով են խոսում Ասլանի, Ռազմիկի, Սուրիկի և շատերի մասին, որոնք ոչ միայն լավագույն աշխատող են դարձել, այլև մասնակցում են ակումբի ինքնագործ խմբակներին։

Շատ հաճախ ագիտկետում կազմակերպում ենք նաև հուշերի երեկոներ։ Այսպիսի երեկոներից մեկը նվիրված էր մեր հայրենի Խնկոյան գյուղին։

. . . Նախկին Ղարաքոյա գյուղից հետք անգամ չի մնացել։ Փամբակի հովտի վերին մասում բազմել է նոր Խնկոյանը իր քարաշեն, լուսավոր տներով, լայն փողոցներով, երկհարկանի դպրոցով, ակումբով, հասարակական ու հանրային շենքերով, Իլյիչի լամպերով . . .

— Մի ժամանակ հեռվից նայողին մեր գյուղը թվում էր գետնից մի քիչ վեր բարձրացած հողե բլուրներ։ Միայն երդիկներից բարձրացող ծուխն էր զգացնել տալիս, որ դա գյուղ է, մարդիկ են ապրում այդ գետնախորշերում,— այսպես սկսեց իր զրույցը հուշերի երեկոյում տարեց կոլտնտեսական Համբարձում Կիրակոսյանը,— սովի սև ուրվականը շրջում էր փողոցներում, ներս խուժում տները ու այնտեղից դուրս քաշում իր զոհին։ Չկար դպրոց, տիրում էր լիակատար խավար ու անգրագիտություն։ Գյուղի միակ գրագետը Խնկո-Ապերն էր, որին հայրը ուղարկել էր Գյումրի (Լենինական) ծառայության, որտեղ էլ սովորել էր գրել-կարդալ։

Ավելի ծանր օրեր էին առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ, երբ գյուղի 900 բնակչից թուրք բռնակալների յաթաղանից փրկվեցին միայն 120 մարդ։ Թուրքերը տղամարդկանց սվիններով սպանեցին եկեղեցու բակում, իսկ կանանց ու երեխաներին կենդանի այրեցին եկեղեցու մոտ գտնվող մարագներում . . .

Այրեցին, ավերակների ու մոխրակույտերի վերածեցին գյուղը։ Ահա այսպես գտավ Սովետական իշխանությունը մեր գյուղը,— ավարտում է իր հուշերը Հ. Կիրակոսյանը։ Նրան փոխարինում է դպրոցի դիրեկտոր ընկեր Արտաշես Կիրակոսյանը, որը պատմում է Սովետական իշխանության տարիներին աշխատավորների ձեռք բերած հաջողությունների մասին։

Սովետական իշխանության տարիներին հիմնովին փոխվեց մեր գյուղը։ Աշխատավորներն սկսեցին կառուցել նոր բնակարաններ, հանրային ու հասարակական շենքեր, դպրոց, ակումբ, բուժարան։ Ամրապնդվեցին կոլտնտեսային կարգերը։ Գյուղում մուտք գործեց ռադիոն, էլեկտրականությունը։ Վերացվեց անգրագիտությունը։ Շատ շատերը ունեն միջնակարգ, թերի բարձրագույն և բարձրագույն կրթություն։ Մենք այժմ ունենք մեր ուսուցիչները, մեր բժիշկը և մեր գյուղատնտեսական մասնագետները։ Չկա գյուղում մի տնտեսություն, որ չունենա ռադիո, ռադիոընդունիչ, թերթ կամ ամսագիր չստանա։ Կոլտնտեսությունն ունի մեքենատրակտորային պարկ։ Թեթևացել է



մարդու ֆիզիկական աշխատանքը։ Գործում է ստացիոնար կինոկետը։

Մեր կոլտնտեսականները դարձել են ունևոր, որովհետև լավ են աշխատում, խղճով են աշխատում։ Կոլտնտեսական Սիրեկան Հովհաննիսյանի ընտանիքը վաստակած աշխօրերի դիմաց ստացավ 4 տոննա հացահատիկ, 315 կգ կաթնամթերք, 800 ռուբլի դրամ։ Համարյա նույնչափ ստացան նաև Անդրանիկ Սարգսյանը, Սեդրակ Մանուկյանը և ուրիշները։

Խնկոյանցինների համար անցյալը արդեն դարձել է հուշ, նրանք այժմ բռնել են նոր, լուսավոր կյանքի ճանապարհը։

Հետաքրքիր անցավ «Ո՞րն է իսկական ընկերությունն ու բարեկամությունը» ագիտկետում կազմակերպված թեմատիկ երեկոն։

Երեկոյի թեման հուզում էր բոլորին, հատկապես երիտասարդությանը։ Բոլորը աշխատում էին մասնակցել երեկոյին։ Եվ ահա եկավ երեկոյի օրը։ Դահլիճում հավաքվել էր մեծ բազմություն։ Սկսվեց երեկոն, և ամբողջ դահլիճով հնչեց Ա. Բաբաևի «Եղբայրություն» երգը։ Երգում էին բոլորը։ Այնուհետև սկսվեց զեկուցումը։ Զեկուցողը ման-

ռամասն խոսեց իսկական ընկերության ու բարեկամության մասին, մեր երիտասարդության բարոյական կերպարի մասին։ Զեկուցողը հիացմունքով խոսեց Ազատ Մանուկյանի և Ցաշա Հակոբյանի, այդ երկու կոմերիտական անբաժան ընկերների մասին, որոնք վեց տարի է, ինչ միասին հովիվ են կոլտնտեսությունում և գյուղի պարծանքն են, ինչպես նաև անբաժան հորթապահ-ընկերներ Արարատ Ռնտակյանի, Ֆելիքս Դավթյանի բարեկամության մասին։

Զեկուցումից հետո շատ-շատերը ելույթներ ունեցան։ Երեկոն վերջացավ ինքնագործ խմբի համերգով։

Ագիտկետում լայնորեն օգտագործվում են նաև ցուցադրական ագիտացիայի բազմաթիվ ձևեր ու միջոցներ։

Այժմ ավելի մարդաշատ է մեր ագիտկետը։ Կազմակերպում ենք շատ հետաքրքիր ու բովանդակալից միջոցառումներ։ Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական սովետների ընտրությունների կապակցությամբ ագիտկոլեկտիվի անդամները աշխատում են ավելի եռանդուն ու ոգևորված։ Հաճախակի հրավիրվող սեմինար պարապմունքներում ագիտատորներին տրվում է մեթոդական օգնություն։ Մեր ագիտատորները այս օրերին



ընտրողների շրջանում լայնորեն մասսայականացնում են ընտրությունների կանոնադրությունը, կազմակերպում հետաքրքիր զրույցներ ու դասախոսություններ։

Մեր ագիտատորները լայնորեն մասսայականացնում են դեպուտատության թեկնածուների կենսագրությունները, ընտրողներին ծանոթացնում նրանց աշխատանքային գործունեության հետ։

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատության մեր թեկնածուն է Սպիտակի շրջանի Հարթագյուղի կոլտնտեսության առաջավոր կթվորուհի Սեդա Կիրակոսի Փահլևանյանը։ 1963 թվականի մարտի 17-ին՝ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի ընտրությունների օրը, մեր գյուղի բոլոր ընտրողները իրենց ձայնը կտան առաջավոր կթվորուհի Սեդա Կիրակոսի Փահլևանյանի օգտին։

Այս օրերին Խնկոյան գյուղում ամենուրեք զգացվում է բուռն խանդավառություն։ Բոլոր կոլտնտեսականները պարտավորվել են 1963 թվականը դարձնել ավելի բարձր բերքի տարի։

Ս. ՄԱՆՈՒԿՅԱՆ
Ագիտկետի վարիչ

# ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

(Թվեր և փաստեր)

Անցած չորս տարիների ընթացքում Սովետական Հայաստանի աշխատավորները ձեռք են բերել խոշորագույն հաջողություններ: Ծաղկել ու զարգացել է մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը, գիտությունն ու կուլտուրան: Էլ ավելի է բարձրացել ժողովրդի նյութական բարեկեցության մակարդակը:

*Ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերությունը 1962 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, աճել է 50 տոկոսով։*

*Այդ նույն ժամանակում մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության արտադրանքը աճել է ավելի քան երկու անգամ, քիմիական արդյունաբերությանը՝ 55 տոկոսով, շինանյութերինը՝ երկու անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 13 տոկոսով։*

*Անցած չորս տարիներին լայն զարգացում է ապրել սպառման միջոցների արտադրությունը։ Ռեսպուբ-*



*լիկայի թեթև արդյունաբերությունն աճել է 18 տոկոսով, սննդի արդյունաբերությունը՝ 44 տոկոսով։*

*Անցած չորս տարիներին մեր ռեսպուբլիկայում ավելի է արտադրվել ավտոդող՝ 53 տոկոսով, մինչև 100 կիլովատանոց էլեկտրաշարժիչներ՝ 68 տոկոսով, ուժային տրանսֆորմատորներ՝ 43 տոկոսով, կոմպրեսորներ՝ երկու և կես անգամով, մետաղահատ հաստոցներ՝ 2,6 անգամով, ցեմենտ՝ 56 տոկոսով, հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաներ՝ 4 անգամով և այլն։*

*Վերջին չորս տարում գործարկվել են 82 նոր գործարան և 87 խոշոր ցեխ ու տեղամաս։*

*Աճել են կապիտալ ներդրումները։ Յոթնամյա պլանով նախատեսված 668 միլիոնի դիմաց չորս տարում իրացվել է 746,3 միլիոն ռուբլի։*

*Անցած չորս տարիների ընթացքում ռեսպուբլիկայի արդյունաբերությունը իրացրել է 400 նոր տեսակի արտադրանք։ Բավական է ասել, որ միայն 1962 թվականին իրացվել է շուրջ 100 նոր տեսակի արտադրանք։*

*Անցած չորս տարիներին մեծ աշխատանքներ են կատարվել նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորման, հին սարքավորումները նորերով փոխարինելու և արտադրության ավտոմատացման բնագավառում։ Միայն 1962 թվականին նոր տեխնիկայի ար-*

մատավորումից ժողտնտխորհի ձեռնարկությունները տնտեսեցին 7 միլիոն 500 հազար ռուբլի։

Պարտիայի և կառավարության կողմից անցկացված խոշոր միջոցառումները ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողներին հնարավորություն տվեցին անցած չորս տարիներին ձեռք բերել խոշոր հաջողություններ։ 1962 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ցանքատարածությունները ավելացել են 5 տոկոսով, այդ թվում՝ ցորենինը և եգիպտացորենինը՝ 2,3 անգամ, շաքարի ճակնդեղինը՝ 3 տոկոսով, բանջարեղենինը՝ 7 տոկոսով, կերային կուլտուրաներինը՝ 32 տոկոսով։ 36 տոկոսով ավելացել է պտղատու այգիների տարածությունը, խաղողի այգիներինը՝ 43 տոկոսով։

Չորս տարում կովերի գլխաքանակը աճել է երկու տոկոսով, ոչխարներինը՝ 13 տոկոսով։

Մեծ զարգացում է ապրել թռչնաբուծությունը։ Կոլտնտեսություններում և սովխոզներում թռչունների թիվը եռապատկվել է։

Մեծ չափով ավելացել է անասնապահական մթերքների արտադրությունը։ 1962 թվականին արտադրվել է 34,7 հազար տոննա միս, 319,1 հազար տոննա կաթ, 3.812 տոննա բուրդ, 165,8 միլիոն հատ ձու։

Գյուղատնտեսության աշխատողները 1962 թվա-



կանին, 1958 թվականի համեմատությամբ, պետությանը ավելի են վաճառել միս՝ 17 տոկոսով, կաթ՝ մոտ 70 տոկոսով, ձու՝ 8 անգամ, ծխախոտ՝ 24 տոկոսով, շաքարի ճակնդեղ՝ 1,6 տոկոսով, խաղող՝ երկու անգամից ավելի և այլն։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ 1962 թվականին ներդրվել է 260,9 միլիոն ռուբլի, որը 1958 թվականի համեմատությամբ ավելի է 65 տոկոսով։ Միայն վերջին չորս տարում ներդրվել է մոտ մեկ միլիարդ ռուբլի, որը հավասար է 1921—1956 թվականներին ներդրված ամբողջ գումարին։

Անցած չորս տարում ռեսպուբլիկայի բնակչությունը 1.764,1 հազարից աճել և այժմ կազմում է 2.021 հազար մարդ։

Այժմ ռեսպուբլիկայի բանվորների և ծառայողների թիվը կազմում է 500 հազար մարդ, որը 1958 թվականի համեմատությամբ ավելի է 38 տոկոսով։

Ռեսպուբլիկայի ազգային եկամուտը, 1958 թվականի համեմատությամբ, աճել է 32 տոկոսով։

Մեծ չափերով ավելացել են բնակչության եկամուտները, որոնք ստեղծել են ապրանքաշրջանառության մեծացման հնարավորություններ։ 1962 թվականին ռեսպուբլիկայում ապրանքաշրջանառությունը կազ-

մել է 600 միլիոն ռուբլի, որը 1958 թվականի համեմատությամբ ավելի է 40,6 տոկոսով։

Անցած չորս տարիներին բնակչությանը վաճառվել է ավելի շատ քանակությամբ սառնարաններ, հեռուստացույցներ, լվացքի և կարի մեքենաներ, ժամացույցներ, մոտոցիկլետներ, մարդատար ավտոմեքենաներ և այլն։

Չորս տարիների ընթացքում կառուցվել և շահագործման է հանձնվել 1.814 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն կամ 45 հազար բնակարան։ Այդ ավելի շատ է, քան կառուցվել է 1921—1959 թվականներին միասին վերցրած։

Քաղաքներում և բանվորական ավաններում չորս տարում պետության օգնությամբ բնակիչները կառուցել են 837 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ գյուղական վայրերում՝ 31,5 հազար տուն։

Միայն անցած չորս տարիների ընթացքում կառուցվել են 52,4 հազար աշակերտական տեղով դպրոցական շենքեր։

Անցյալ տարի ռեսպուբլիկայի բնակչության 23 տոկոսը կամ 457,1 հազար մարդ սովորում էին, այդ թվում՝ հանրակրթական դպրոցներում՝ 411,2 հազար, բուհերում՝ 25,9 հազար, տեխնիկումներում՝ 20 հազար սովորողներ։ 1962 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայում սովորողների թիվը աճել է 112,7 հազարով, այդ թվում՝ բուհերում՝ 6,8 հազարով կամ 36 տոկոսով, տեխնիկումներում՝ 6,4 հազարով կամ 47 տոկոսով։

Գիշերօթիկ դպրոցներում 1962 թվականին սովորում էին երեք անգամ ավելի շատ աշակերտներ, քան 1958 թվականին։

Եթե 1958 թվականին ռեսպուբլիկայում գործում էին 69 գիտական հիմնարկներ, որոնցից 35-ը գիտահետազոտական ինստիտուտներ էին, ապա այժմ ռեսպուբլիկայում կա 84 գիտական հիմնարկություն, որից 46-ը գիտահետազոտական ինստիտուտներ են։

Աճել է նաև բժիշկների թիվը։ Եթե 1958 թվականին ռեսպուբլիկայում աշխատում էին 3.968 բժիշկներ, ապա այժմ աշխատում են 4.579 բժիշկներ։

Հիվանդանոցային մահճակալների թիվը 12.245-ից աճել է 14.805-ի։

Այժմ ռեսպուբլիկայի յուրաքանչյուր 10 հազար բնակչին հասնում է 74 մահճակալ և 23 բժիշկ։

Անցած չորս տարիները նոր, մեծ հաջողություններ բերեցին մեր ռեսպուբլիկային: Առաջիկայում էլ ավելի կծաղկի ու կզարգանա մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը:

---

# ՍՍՌՄ-Ը ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*...Պաշտպանել և ամրապնդել խաղաղությունը, հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների հարաբերություններում հաստատել խաղաղ գոյակցության սկզբունքները՝ ահա մեր պետության արտաքին քաղաքականության գլխավոր ուղղությունը։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ

Աշխարհի բոլոր լեզուների մեջ որքա՜ն արգահատելի է «պատերազմ» բառը։ Շահագործող դասակարգերի սանձազերծած ավազակային պատերազմները ոչնչացրել են տասնյակ միլիոնավոր մարդկանց, կործանել են նյութական և կուլտուրական մեծ արժեքներ, վիթխարի դժվարություններ են ըստեղծել բազմաթիվ սերունդների համար։ Իզուր չէ, որ կայուն խաղաղությունը դարեր



շարունակ եղել է ժողովուրդների երազանքը։ Սակայն ժողովուրդների միջև երկարատև խաղաղություն հաստատելու ռեալ պայմաններ ստեղծվեցին միայն Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի, Սովետական իշխանության հաղթանակով, մեր երկրում սոցիալիստական կարգերի հաստատման շնորհիվ։

Սովետական պետության երկար ու համառ պայքարը խաղաղության համար սկսվեց Սովետների Համառուսաստանյան երկրորդ համագումարի հաստատած հաշտության դեկրետով, որի հիմքում դրված էր տարբեր սոցիալ-տնտեսական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան գաղափարը, որը դարձավ մեր մեծ երկրի արտաքին քաղաքականության սկզբունքներից մեկը։

Խաղաղության պաշտպանման և տարբեր սոցիալ-տնտեսական պայմաններ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հարցերը նոր ուժով ընդգծվեցին ՍՄԿԿ XX, XXI և XXII համագումարներում։ Այժմ մարդկության առջև կա միայն մի ընտրություն՝ խաղաղ գոյակցություն կամ ավերիչ պատերազմ։ Իսկ մարդկությունը լավ գիտի պատերազմների բերած աղետները։

Գիտական հաշվարկումները ցույց են տվել, որ անցած 5.559 տարիների ընթացքում ժողովուրդները ապրել են 14.513 մեծ ու փոքր պատերազմներ, որոնց հետևանքով զոհվել է 3.640 միլիոն մարդ, ոչնչացվել են 500 կվինտրիլիոն շվեյցարական ֆրանկի (մոտ 100 կվինտրիլիոն ռուբլու) արժողությամբ նյութական արժեքներ։

Անցած բոլոր պատերազմների մեջ նյութական միջոցների ոչնչացման և մարդկանց բնաջնջման մասշտաբներով բացառիկ տեղ են գրավում առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմները։ Առաջին համաշխարհային պատերազմում, որի մեջ ներքաշվել էին 1,5 միլիարդ բնակչությամբ 28 երկիր և մոբիլիզացիայի էր ենթարկվել 70 միլիոն մարդ, զոհվեց 10 միլիոն մարդ, հաշմանդամների և խեղանդամների թիվը հասավ 20 միլիոնի, միլիոնավոր մարդիկ ոչնչացան սովից ու համաճարակից։ Պատերազմի դաշտերում զինվորների թափած արյունը վերածվում էր ոսկու և լցվում մոնոպոլիստների գանձարանը։

Ավելի վիթխարի կորուստներ եղան երկրորդ համաշխարհային պատերազմում. ֆաշիզմը, մարդկությանը նետելով այդ ահավոր պատերազմի մեջ, սպառնում էր բազմաթիվ



ժողովուրդների գոյությանը։ Այդ պատերազմում զոհվեցին 32 միլիոն զինվոր ու սպա, ռմբակոծությունից ոչնչացավ 25 միլիոն, հաշմանդամ և խեղանդամ դարձան 25 միլիոն մարդ, կորստի մատնվեց պատերազմի մասնակից երկրների ազգային եկամտի 60—70 տոկոսը։ Միայն պատերազմի անմիջական ծախսերը կազմեցին այնպիսի մի գումար, որով հնարավոր էր երկրագնդի բոլոր երեխաներին տալ միջնակարգ կրթություն, աշխարհի բոլոր ընտանիքների համար առանձին-առանձին կառուցել 6 սենյականոց բնակարաններ։ Ֆաշիստական հորդաների՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսությանը պատճառած վնասները (ռազմական ծախսերի և ժամանակավորապես օկուպացված շրջանների արդյունաբերությունից ու գյուղատնտեսությունից ստացվող եկամուտների ժամանակավոր կորստի հետ մեկտեղ) կազմեցին 2 տրիլիոն 569 միլիարդ ռուբլի (հին դրամով)։

Ժողովուրդների վրա շատ ծանր բեռ է սպառազինությունների մրցավազքը։ Արդեն այժմ ամեն տարի ռազմական նպատակների համար ծախսվում է 120 միլիարդ դոլար։ Իսկ չէ՞ որ 500 միլիարդ դոլարով, այսինքն չորս տարում պատերազմի նախապատրաստման

վրա վատնած գումարով, կարելի է ստեղծել Թուրի նման 30—40 խոշոր ինդուստրիալ շրջաններ: Բացի այդ, հայտնի է, որ ՆԱՏՕ-ի բոլոր երկրներում վերջին տասը տարում այդ նպատակի համար ծախսվել է ավելի քան 620 միլիարդ դոլար:

Իսկ թե ինչպիսի վիթխարի ավերածություններ կլինեն, եթե սանձազերծվի ջերմամիջուկային պատերազմ, կարելի է պատկերացնել նրանով, որ ջրածնային ռումբի տեսակներից մեկը իր հզորությամբ գերազանցում է մինչև այժմ պատերազմների ընթացքում օգտագործված պայթուցիկ նյութերի ուժին: Եթե պայթի նոր պատերազմ, ապա այդ ահավոր զենքից մարդիկ կբնաջնջվեն միլիոններով: Այդ կապակցությամբ ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշում է. մնում է մի բան՝ խաղաղ գոյակցություն: Իսկ դա նշանակում է հրաժարվել պետությունների միջև պատերազմից, իբրև միջազգային վիճելի հարցերի լուծման միջոցից, դրանք լուծել բանակցությունների միջոցով, իրավահավասարություն, փոխըմբռնում և վստահություն պետությունների միջև, հաշվի առնելով միմյանց շահերը. չմիջամտել իրար ներքին գործերին, ընդունել, որ յուրաքանչյուր ժողովուրդ իրավունք ունի ինքնուրույն



կերպով լուծել իր բոլոր հարցերը, խստորեն հարգել բոլոր երկրների սուվերենությունն ու տերիտորիալ ամբողջականությունը, զարգացնել տնտեսական և կուլտուրական համագործակցությունը լիակատար հավասարության ու փոխադարձ շահավետության հիման վրա:

Խաղաղ գոյակցությունը սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ մրցության հիմքն է միջազգային մասշտաբով: Այդ քաղաքականությունը իր սոցիալական բովանդակությամբ միջազգային արենայում իմպերիալիզմի ագրեսիվ ուժերի հետ պրոլետարիատի տնտեսական, քաղաքական և գաղափարական պայքարի լարված ձևն է: Հետևողականորեն կենսագործելով խաղաղ գոյակցության գիծը, սոցիալիստական երկրներն անշեղ կերպով ամրապնդում են համաշխարհային սոցիալիստական սիստեմի դիրքերը կապիտալիզմի հետ նրա մրցության մեջ: Խաղաղ գոյակցության պայմաններում ավելի նպաստավոր հնարավորություններ են ստեղծվում կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության պայքարի համար, հեշտանում է գաղութային և կիսագաղութային երկրների պայքարն իրենց անկախության համար: Այդ քաղաքա-

կանությունը համապատասխանում է ամբողջ մարդկության կենսական շահերին։

Անկեղծորեն վարելով խաղաղասիրական քաղաքականություն, Սովետական կառավարությունը սոցիալիստական երկրների կառավարությունների հետ մեկտեղ ձգտում է վերացնել պատերազմի սանձազերծման հնարավորությունները, ոչնչացնել նրա վարման միջոցները, իրականացնել ընդհանուր ու լրիվ զինաթափում, կնքել Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր և լուծել Արևմտյան Բեռլինի պրոբլեմը, վերացնել պատերազմական վտանգի օջախները և այլն։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից հետո Սովետական Միությունը մի քանի անգամ կրճատեց իր զինված ուժերը, միակողմանիորեն դադարեցրեց ատոմային զենքի փորձարկումները և կոչ արեց մյուս պետություններին հետևելու իր օրինակին։

Սոցիալիզմի նպատակը ժողովուրդների միջև խաղաղության ու բարեկամության հաստատումն է։ Սոցիալիստական սիստեմի պատմական առավելություններն այն անհրաժեշտ պայմաններն են, որոնք ապահովում են նրա հաղթանակը կապիտալիզմի հետ խաղաղ մրցության մեջ։ Նրա համար



խորթ են ագրեսիան, օտար տերիտորիաների զավթումը, ուրիշ ժողովուրդների ստրկացումը, նրանց պետք չեն սպառազինությունների մրցավազքը և պատերազմը։ Եվ դա հասկանալի է, որովհետև դրանց ուղեկցում են հարկերի աճը, լայն սպառման առարկաների գների բարձրացումը, ռեալ աշխատավարձի կրճատումը։

Հայտնի է, որ Սովետական Միությունը երկար տարիներ պայքարում է հասնելու միջուկային զենքի փորձարկումների դադարեցմանը, բայց ԱՄՆ-ը իր դաշնակիցների հետ միասին վիժեցնում են այդ հարցի շուրջը համաձայնության հասնելու բանակցությունները։ Դա ամբողջ աշխարհի առջև կրկին անգամ բացահայտվեց այն ժամանակ, երբ ԱՄՆ-ը և Անգլիան զինաթափման 18 պետությունների կոմիտեում հրաժարվեցին բանակցությունների հիմքում դնել այդ կոմիտեին մասնակից չմիացած պետությունների՝ միջուկային փորձարկումների դադարեցման համաձայնագրի վերահսկողության մասին առաջարկությունը։ Դեռ ավելին, նրանք վերսկսեցին միջուկային պայթեցումները։

Պարզ է, որ ՍՍՌՄ-ի խաղաղ գոյակցության և միջազգային պրոբլեմները խաղաղ ճանապարհով լուծելու գծին իմպերիալիզմի

ագրեսիվ շրջանները հակադրում են «սառը պատերազմի» պահպանման և միջազգային լարվածության ուժեղացման գիծը: Եվ նրանց մեղքով էլ հաճախ ծագում են այդպիսի ճգնաժամեր, որոնք սրում են միջազգային իրադրությունը և մարդկությանը մղում դեպի համաշխարհային պատերազմի անդունդը: Այդպիսի ճգնաժամերից էր Կարաիբյան ծովի շրջանում անցյալ տարվա հոկտեմբերին ծագած իրադրությունը: Ոտնահարելով միջազգային հանրաճանաչ նորմաները, ԱՄՆ-ի ռեակցիոն ուժերը Կուբայի ռևոլյուցիայի հաղթանակի առաջին օրվանից ամեն ինչ անում էին Կուբայի ռևոլյուցիոն կառավարությունը տապալելու և այնտեղ իրենց տիրապետությունը վերականգնելու համար: Սակայն Սովետական կառավարության իմաստուն, խաղաղասիրական քաղաքականությունը վերջ տվեց այդ վիճակին և կանխեց նոր պատերազմը:

Սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության հիմքում դրված են ժողովուրդների խաղաղության, իրավահավասարության, ինքնորոշման, բոլոր երկրների անկախությունն ու սուվերենությունը հարգելու սկզբունքները: Այն պայմանները, երբ իմպերիալիզմը դադարել է միջազգային






հարաբերություններում գերակշռող դեր խաղալուց և գնալով ավելի մեծ դեր է խաղում սոցիալիստական սիստեմը, երբ համաշխարհային քաղաքականության մեջ խիստ աճել է ազգային անկախություն նվաճած պետությունների և կապիտալիստական երկրների ժողովրդական մասսաների ազդեցությունը, ռեալ հնարավորություններ են ստեղծում իմպերիալիստական ագրեսիվ քաղաքականության նկատմամբ սոցիալիզմի առաջ քաշած նոր սկզբունքների հաղթանակի համար:

Կ. ԹԱՌՈՅԱՆ

## ՀԱՐԳԵԼԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐ

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում օրեցօր ծավալվում է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը՝ 1963 թվականը գյուղատնտեսական մթերքների առատության տարի դարձնելու համար:

Խնդրվում է ագիտացիոն աշխատանքի ձեր փորձի մասին գրել թղթակցություն, ինչպե՞ս եք օգնում գյուղի աշխատողներին ստանձնած պարտավորությունները կատարելու համար:

ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

---

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству промышленностью и строительством

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству сельскохозяйственного производства

# АГИТАТОРИ БЛОКНОТ

## № 5

## 1963

ՎՖ 09914 Պատվեր 199 Տիրաժ 8425

Հանձնված է արտադրության 26/II 1963 թ.
Ստորագրված է տպագրության 5/III 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.։